մէջ, որոնք կը շահագրգռեն երկու երկիրները, ինչպէս նաեւ իրենց հաստատ որոշումը՝ շարունակելու համար խաղաղութեան ամրապնդման գործը, կատարեալ համերաշխութեամբ Ազգերու Դաշնակցութեան հետ եւ գոյութիւն ունեցող դաշնագիրներու հիման վրայ:

«Երկու ազգերը միացնող աւանդական զգացումներէն ներշնչուած, երկու արտաքին նախարարները նոյնպէս խիստ բարեկամական ոգիով խորհրդակցեցան այն զանազան հարցերուն մասին, որոնց մօտալուտ կարգադրութիւնով աւելի պիտի ամրապնդուին երկու երկիրներու տնտեսական եւ ելմտական կապերը:»

Ստորագրութեան արարողութենէն վերջ, Պրիան ընդունեց մամուլի ներկայացուցիչները Մարինքովիչի ներկայութեան եւ յայտարարեց.

«Դաշնագիրը զոր ստորագրեցինք, կը նուիրագործէ իրական կացութիւն մը, որ երկար ատենէ ի վեր գոյութիւն ունի եւ որ հիմնուած է անայլայլ բարեկամութեան մը վրայ: Երբ Ազգերու Դաշնակցութեան կողմէ արձանագրուելէ վերջ հրատարակութեան տրուի այսօր ստորագրուած դաշնագիրը, այն ատեն պիտի տեսնուի թէ անոր մասին լոյս տեսած շատ մը լուրեր անհիմն են: Բնականաբար դաշնագիրը չէ ուղղուած ո եւ է մէկուն դէմ: Անիկա բոլորովին համապատասխան է Ազգերու Դաշնակցութեան ոգիին եւ արդէն իր գլխաւոր յօդուածները անկէ կը բխին: Անիկա բաց է բոլոր բարի կամեցողութեանց առջեւ եւ ծաւալումի համար ո եւ է արգելք չունի: Կրնայ նոր Լոքարնոյի մը սաղմը ըլլալ: Այս մասին անկարելին պիտի ընենք: Ամէն պարագայի, այս դաշնագիրը ոչ ոքի համար անակնկալ պիտի ըլլայ, որովհետեւ զայն գիտնալու մէջ շահ ունեցող բոլոր պետութիւնները արդէն գիտեն զայն:»

## ՅՈՒՆԱՍՏԱՆ ԵՒ ՊՈՒԼԿԱՐԻԱ՞ ԵՒՍ

Պելկրատի «Փրավտա» թերթը կը գրէ թէ Յունաստան եւ Պուլկարիա եւս մտադիր են նման դաշնագիրներ կնքել Ֆրանսայի եւ Սերպիոյ հետ: Փարիզի հելլէն դեսպան Փոլիթիս առջի օր տեսակցած է Սերպիոյ արտաքին նախարար Մարինքովիչի հետ: Տեսակցութենէն վերջ «Փրավտա»յի թղթակցին յայտնած է թէ Յունաստան մօտ օրէն բարեկամական դաշնագիր մը պիտի կնքէ Ֆրանսայի հետ եւ բանակցութիւններ պիտի սկսի Սերպիոյ հետ՝ զինակցութիւն մը կնքելու համար:

Պուլկար մամուլը խօսելով ֆրանքօ-սերպ դաշնագրին վրայ, յոյս կը յայտնէ թէ անոր հետեւանքով Պալքաններու կացութիւնը պիտի բարւոքի եւ թէ պուլկարօ-սերպ յարաբերութիւնները պիտի լաւնան, տրուած ըլլալով որ Փարիզ միշտ աշխատած է մերձեցում մը առաջ բերել Սոֆիայի եւ Պելկրատի միջեւ:

.˙. Պելկրատի իտալական դեսպան զօրավար Պոտրէրօ ստիպողաբար Հռոմ հրաւիրուեցաւ: Սերպիոյ արտաքին նախարար Մարինքովիչ Փարիզէն Հռոմ պիտի անցնի:

## Պալքաններու կացութիւնը վտանգաւոր

Անգլիական «Ուէսթմինսթըր կազէթ»ը իր դիւանագիտական աշխատակիցը ղրկած է Պալքանները, կացութիւնը ուսումնասիրելու համար: Իր առաջին յօդուածին մէջ, որ լոյս տեսաւ Զինադադարի օրը, կ'ըսէ.—

«Ծայրաստիճան տագնապալի է կացութիւնը Պալքաններու մէջ: Պատասխանատու իշխանութիւններու կարծիքով, քանի մը տարիէն կրնայ պայթիլ մեծ պատերազմ մը, եթէ մեծ պետութիւնները չարունակեն իրենց անհոգ քաղաքականութիւնը:»

Թղթակիցը կ'ըսէ թէ տեսած է Պալքաններու մէջ շահ չունեցող մեծ պետութեան մը գործակալներուն գաղտնի տեղեկագիրները, որոնց պարունակութիւնը կը հաստատեն երկու չէզոք դիւանագիտական աղբիւրներ, եւ կը հաստատէ թէ Իտալիա պատրաստութիւններ կը տեսնէ եւ Եուկօսլաւիա պաշտպանութեան կը պատրաստուի:

«Իտալիա կը ղրկէ զէնք ու ռազմանիւթ, որոնք Տուրացցօ ցամաք կ'ելլեն: Մեծ թիւով աւստրիական հրացաններ փոխանակուեցան իտալականներով: Կրնամ հաստատել թէ Թիրանայի սերպ դեսպանատան Թարգմանը ձերբակալուեցաւ իտալական կառավարութեան պնդումներուն վրայ, որովհետեւ յիշեալը Տուրացցօ կ'երթար՝ աչքով տեսնելու համար այս զէնքի եւ ռազմանիւթի առաքումները: Իտալիա կ'ըսէ թէ միայն 11 իտալացի սպաներ կցուած են ալպանիական բանակին իբրեւ քննիչ: Ի վիճակի եմ յայտնելու թէ աւելի քան իտալացի 50 սպաներ եւ 200 պահեստիներ կը ծառայեն հանրօգուտ շինութեանց մէջ: Բացի ռազմագիտական ճամբաներու շինութեան հսկելէ, անոնք ապստամբութեան մը պարագային Ակմէտ Զօկուի անձնապահ գունդի պաշտօնը պիտի վարեն: Ասկէ զատ, Ալպանիոյ երեք զօրախումբերը իտալացիներու հսկողին ենթակայ են: Բոլոր հանրօգուտ շինութիւնները ձեռքն են իտալական ընկերութեան մը, որ մէկ ճիւղն է իտալիոյ հսկողին ենթակայ Ալպանական դրամատան:»

## ՄԱՆՐ ԼՈՒՐԵՐ

ՓԱՐԻԶԻ ՀԱՅ ԿԱՄԱՒՈՐԱԿԱՆ Միութեան կողմէ պատուիրակութիւն մը հայկական եռագոյնով մասնակցեցաւ Զինադադարի տօնախմբութեանց՝ Անծանօթ Զինուորի գերեզմանին վրայ:

ՄԱՆԻՍԱԼԵԱՆՆԵՐՈՒ ՊԱՐԱԳԱՆ.— Պուքրէշէն կը գրեն թէ Պ. Գէորգ Մանիսալեան եւ իր որդին որոնք ամիսէ մը ի վեր կը գտնուէին Վաքարէշթի բանտը, կրկին հարցաքննուելով եւ դեռ լուսաբանուելիք կէտեր գոյութիւն ունենալով, հարցաքննիչ դատաւորը յարմար դատեց որ երեսուն օր եւս երկարաձգուի բանտարկութիւնը:

ՏԻԿԻՆ ՖՐԱՆՍԻՍ ՈՒԻԼՍԸՆ ԿՐԷՅՍԸՆ, որ հակառակ իր երեք փորձերուն, չէր յաջողած Ատլանտեանը կտրելով Բոփէնհակ երթալ, շոգենաւով կտրեց Ատլանտեանը եւ առջի օր Փարիզ հասաւ: Տիկինը անմիջապէս մեկնեցաւ Գերմանիա, ուր կարգ մը գործեր կարգադրելէ յետոյ պիտի դառնայ Ամերիկա եւ մեծ յոյս ունի որ Ատլանտեանի թռիչքը պիտի յաջողցնէ:

ՌՈՒԹ ԷԼՏԸՐ եւ ճորճ Հէյլտէյն «Աքուիթանիա» շոգենաւով Նիւ Եորք հասան եւ պաշտօնապէս ընդունուեցան Նիւ Եորքի քաղաքապետութեան կողմէ: Դիմաւորելու եկած էր նաեւ Էլտըրի ամուսինը Լայլ Ուոմըք:

ՀՈՒՆԳԱՐԱԿԱՆ պարտաթուղթերու խնդրին առթիւ նոր ձերբակալութիւններու կը սպասուի: Ոստիկանութիւնը ձերբակալեց ճարտարապետ Ժան-Փօլ տը Ֆալուան, իբրեւ մեղսակից:

ՊՈԼՍՈՅ ուսանողութիւնը զբաղեցնող Աղեքսանդրիոյ մասնաճիւղի տնօրէն Սամանինք փախուստ եղաւ. կառավարութեան հրամանով:









## ՑՈՒՑԱՏԵՍԻ

Հ. Յ. Դ. Ալֆորվիլի Սարգիս Մինասեան ենթակոմիտէի դասախօսական ժողովը այսօր կիրակի կէսօրէ վերջ ժամը 3ին, ակումբի թագայի սրահը: Կարեւոր օրակարգ:

ԲԱՐՁՐ ՀԱՅՔԻ Հայրենակցական միութեան ժողովը այսօր կիրակի ժամը 3ին 10 Rue Rampal.

ԱՅՍՕՐ Հ. Մ. Ը. Մ.ի նորակազմ «Իթալիա»ի մասնաճիւղի ֆութպոլի Ա. խումբը պիտի մրցի Bellevilloiseի Բ. խումբին դէմ: Իսկ Փարիզի պահեստի խումբը պիտի մրցի ֆրանս. լաւ խումբի մը դէմ: Հաւաքավայր Métro Opéra ժամը 11.45ին:

«Բուժակ» Լոյս տեսաւ նոյեմբ.ի թիւը (Բ. տարի թիւ 17) ճոխ բովանդակութեամբ: կը ծախուի Պելվիլի եւ Սէն-Միշէլի լրագրավաճառներուն քով:












IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris(10 )
Le Gérant : H. TEURNIER

## Նոր ձերբակալութիւններ

Հարցաքննիչ դատաւոր Կլար՝ ամբաստանեալ դրամատէր Պլումէնշթայնի ներկայութեան աչքէ անցուց գրաւուած բոլոր հունգարական պարտաթուղթերը։ Ասկէ զատ իր քննութեանց հետեւանքով երեւան հանուեցան նոր մեղսակիցներ։ Առջի օր վկայութեան համար Ընդհանուր Ապահովութեան տնօրէնութիւն կանչուեցաւ Քիեւ ծնած Հրեայ մը՝ Աարոն Կոլտովսքի, որ Թովպինիի քարտուղարը եղած էր։ Իր յայտարարութիւնները կասկած ներշնչեցին իր կատարած դերին մասին։ Հարցաքննիչ դատաւորին քով տարուելէ վերջ, որոշուեցաւ իբրեւ մեղսակից բանտարկել զայն։

Ձերբակալուած է ուրիշ մը եւս, որուն անունը գաղտնի կը պահուի։

## Տիկին Կրէյսրն Փարիզի մէջ

Տիկին Ֆրանսիս Ուիլսըն Կրէյսրն, Նախագահ Ուիլսընի ազգականուհին, որ Ատլանտեանը օդանաւով չէր կրցած կտրել եւ ի վերջոյ շոգենաւով Եւրոպա եկած էր, Գերմանիայէն Փարիզ վերադարձաւ եւ առջի օր այցելեց Պուռժէի օդանաւային կայանը։ Պուռժէի մէջ լաւ ընդունելութիւն եղաւ իրեն։ Տիկինը հետաքրքրուեցաւ մանաւորապէս առեւտրական նոր օդանաւերով։ Կէսօրէն վերջ թռիչք մը կատարեց Փարիզի վերեւ։

Տիկ. Կրէյսրն երէկ այցելեց Փարիզի օդերեւութաբանական դրասենեակը եւ այդ ճիւղի վերաբերեալ կարեւոր տեղեկութիւններ քաղեց։ Հարցումի մը պատասխանելով ըսաւ թէ անմիջապէս որ Ամերիկա հասնի, օդանաւը պատրաստ պիտի ըլլայ Ատլանտեանի թռիչքը փորձելու համար։ Այս անգամ ուրիշ օդանաւորդ մը պիտի ունենայ հետը եւ առաջին նպաստաւոր օդին ճամբայ պիտի ելլէ։

Թէեւ նախապէս ծրագրած էր Ամերիկայէն մինչեւ Քոփէնհակ երթալ մէկ թռիչքով, սակայն Պուռժէի կայանը տեսնելէ յետոյ, կը կարծուի թէ պիտի նախընտրէ մինչեւ Փարիզ գալ։

Տիկինը Փարիզի մէջ կարգ մը գնումներ ընելէ վերջ, Երեքշաբթի «Լէվիաթան» շոգենաւով Ամերիկա պիտի դառնայ։

## Մաքինթոշ եւ ընկերը ողջ են

Երկար լռութենէ վերջ, երէկ Վարշաւայէն հասած հեռագիր մը կ՚ըսէ թէ «Իշխանուհի Քսէնիա» օդանաւը Չորեքշաբթի ժամը 2,30ին վար իջած է հարաւային Լեհաստանի Պիալսպրզէկի գիւղին մէջ ու յետոյ շարունակած է ճամբան դէպի Հնդկաստան։ Անգլիոյ օդանաւային Նախարարութեան հասած տեղեկութիւն մըն ալ կ՚հաստատէ թէ օդանաւորդները վար իջած են Տարնոպոլէն (Կալիցիա) 30 մղոն դէպի հարաւ։

Վերջին լուրերու համաձայն, Մաքինթոշի օդանաւը Լէմպէրկէն 15 քիլոմեդր հեռու Մզանայի մօտ գետին ինկած և ամբողջովին ջախջախուած է։ Ծանրապէս վիրաւորած են երկու գիւղացիներ, որոնցմէ մէկուն սրունքը կոտրած է։ Օդանաւորդները ողջ առողջ են եւ Լէմպէրկի մէկ պանդոկը կը մնան։

## Միլիոններ Նունկէսէրի եւ Քոլիի ընտանիքին

Ուրբաթ կէսօրէն վերջ, Նունկէսէր-Քոլի կոմիտէին գանձապահ Թէոտոր Ռուսօ Նունկէսէրի մօրը յանձնեց 900,000 ֆրանք, արդիւնքը Ամերիկայի մէջ կատարուած հանգանակութեան։ Այս գումարը կը բաղկանայ 745,800 ֆր. արժէքով արժեթուղթէ, է եւ Պանք տը Ֆրանսի վրայ քաշուած 133,345 ֆրանքնոց չէքէ մը։ Արժեթուղթերը տարեկան 29,832 եկամուտ պիտի ապահովեն։

Ռուսօ երէկ ալ Մարսիլիա երթալով, նոյն քանակութեամբ դրամ և արժեթուղթ յանձնեց Քոլիի հօր, մօր, այրիին եւ երեք աղջիկներուն։

## 1200 քիլօ չերվոնեց գրաւուած

Կեղծ թղթադրամներու նոր լուր մը կը հասնի Պերլինէն։ Կեղծարարները Գերմաններ են, որոնք կը գործէին Սատաթիէրաշվիլի անուն Վրացիի մը հրամանին տակ։

Ոստիկանութիւնը Ֆրանքֆորթի մէջ, Պէօլէ անուն յայտնի հակահրեայ եւ ազգայնական Գերմանացիի մը տպարանին նկուղներէն գտաւ 12 սնտուկ, որոնց իւրաքանչիւրը 100 քիլօ ծանրութեամբ 1, 2, 5 եւ 10 ոսկինոց կեղծ չերվոնեցներ կը պարունակէր։ Պէօլէ ձերբակալուեցաւ։

Կեղծիքը այնքան ակներեւ էր, որ զանոնք քշելու առաջին փորձին իսկ Վրացի Սատաթիէրաշվիլի երեւան հանուելով ձերբակալուեցաւ։ Նոյնպէս Միւնիխի մէջ բռնուեցաւ գերման «Օպէրլանտ» գաղտնի կազմակերպութեան նախագահ տոքթ. Վէպէր, որ կը պատրաստուէր Լոնտոն մեկնիլ՝ կեղծ չերվոնեցները անգլիականի վերածելու համար։

Պերլինի ոստիկանութիւնը կը հաղորդէ որ այս կեղծարարները յարաբերութիւն ունէին Փարիզի հունգարական պարտաթուղթերու կեղծարարներուն հետ։ Վրացին յայտարարեց թէ այս չերվոնեցներէն շինած էր ոչ միայն Գերմանիոյ, այլ նաեւ Ֆրանսայի եւ Հունգարիոյ մէջ եւ թէ նպատակն էր դրամ ձեռք բերել՝ Վրաստանի ազատագրական շարժման օգնելու համար։ Այս գործին հետ կապ ունեցող ուրիշ եօթ հոգիներ ալ ձերբակալուեցան։

## Կորսուած առարկայ գտնողներուն վարձքը

Երեսփոխանական ժողովը ընդունեց օրինագիծ մը, որով կորսուած առարկայ գտնող անհատ մը երբ զայն տիրոջ վերադարձնէ, իրաւունք պիտի ունենայ 100ին 5 վարձատրութիւն ստանալու, ինչ ալ ըլլայ առարկային արժէքը։ Օրինագիծը պաշտպանեց երեսփոխան Ֆէլիքս Կուէն եւ ընդունուեցաւ առանց վիճաբանութեան։ Եթէ Ծերակոյտն ալ վաւերացնէ, օրէնք պիտի դառնայ։

Վերջերս գործաւոր մը մէկ միլիոն ֆրանք արժէք ներկայացնող արժեթուղթերու ծրար մը գտած եւ տիրոջը դարձուցած էր։ Մեծահարուստ տէրը այս ծառայութեան փոխարէն գործաւորին տուած էր միայն 20 ֆրանքնոց մը։

— Պարկեշտութիւնը չի վարձատրուիր այս աշխարհի վրայ, մտածած էր գործաւորը։

Դժբախտաբար օրէնքները գործադրելի չեն նախընթաց պարագաներու համար, այլապէս խեղճ գործաւորը ըստ նոր օրէնքին 50,000 ֆրանք պիտի ստանար, փոխանակ 20ի։

### ԵՐԵԿՈՅԹ - ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

կազմակերպուած «Բարձր-Հայք»ի Հայրենակցական Միութեան կողմէ, 26 Նոյեմբեր շաբաթ իրիկուն ժամը 9էն մինչեւ առաւօտ։ 120 Bld. de Bellevilleի երկու սրահներուն մէջ։

Մանրամասնութիւնները յաջորդով։

ՕՐ. ՄԱՐԻԱՄ ՊԵՏՐՈՍԵԱՆ
ԵՒ
ՊՕՂՈՍ ՔԷՇԻՇԵԱՆ
ԱՄՈՒՍՆԱՑԱԾ
19 Նոյ. 1927 Վալանսիէն

## ՅՈՒՇԱՏԵՏՐ

Հ. Յ. Դ. Մարսէյլի «Քրիստափոր»ի ընդհ. ժողովը 21 Նոյեմ. Երկուշաբթի իրիկուն ժամը 8.30ին, սովորական հաւաքատեղին։ Կարեւոր Օրակարգ։ Ընկերներու ներկայութիւնը անհրաժեշտ է։

ՄԵԾ - ՆՈՐ - ԳԻՒՂՑԻՆԵՐՈՒ ժողովը՝ այսօր, ժամը 2ին Café au Clair de Luneի սրահը։

Հ. Մ. Ը. Մ.ի Փարիզի ֆութպոլի Ա. խումբը այսօր կիրակի կը մրցի C. O. Basse-Seineի Ա. խումբին դէմ։ Ժամադրավայր ժամը 11.30ին Gare St. Lazare։ Մեկնում 12ի շոգեկառքով։ Իջնել Les Mureaux։

Պահեստին կը մեկնի Nangis՝ մրցելու համար տեղական Ա. խումբին դէմ. Հաւաքավայր — Gare de l'Est ժամը 12ին։ Շոգեկառքը կը մեկնի 12.30ին։

Իսկ «Իթալի»ի մասնաճիւղի Ա. խումբը պիտի մրցի S. C. Macabiի 2րդ խումբին դէմ։ Ժամադրավայր Porte de Clignancourt ժամը 11.30ին։



IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris(10e)

Le Gérant: H. TEURNIER

կ'երթար Էտիրնէ՝ քաղաքին ազատագրութեան տարեդարձի հանդէսներուն ներկայ ըլլալու համար: Զիրենք փոխադրող վակոնները Թուրք դրօշակներով զարդարուած ըլլալով, Գուլէլի-Պուրկազի հելլէն իշխանութիւնները արգիլեցին կառախումբին անցքը հելլէն սահմանագլուխէն:

Պատուիրակութիւնը մերժած ըլլալով վերցնել վակոններու Թրքական դրօշակները, ստիպուեցաւ Ուզուն-Քէօփրիւ վերադառնալ եւ ինքնաշարժներով գնաց Էտիրնէ:

## Հայ տղոց ճեղնաւորագրութիւնը

Սելանիկի «Հորիզոն»ը կը գրէ.—

Ներքին Նախարարութիւնը հրահանգած է տեղական իշխանութեանց որ խնդրոյ առարկայ տղոց ծնողքներուն տեղեկացուի, որպէսզի, կարելի եղածին չափ շուտ, տեղական քաղաքապետութեանց ներկայացնեն յայտարարութիւններ, որոնց մէջ ճշդուած ըլլան տղոց մականունը, անունը, հօր անունը, ծննդեան թուականն ու ծննդավայրը:

Նոյնատեսակ տեղեկատուութեան ենթակայ են նաև Մերձաւոր Արեւելքի Ամերիկեան Նպաստամատոյցի կողմէ սնուցուած եւ կամ պարզապէս պաշտպանուած տղաքը: Գործողութիւնները կը կատարուին այդ հաստատութիւններու տնօրինութեանց կողմէ:

Արձանագրութեանց տարիքը պիտի ճշտորոշուի կուսակալութիւններու կողմէ, եթէ տղան 15 տարեկանէ վար է, իսկ զինուորական իշխանութիւններու կողմէ՝ եթէ 15 տարեկանը լրացուցած է:

## Ռուսիա, Լեհաստան եւ Գերմանիա

Պերլինէն կը հեռագրեն 25 Նոյեմբեր թուականով.—

Շթրէզէմանի եւ Լիթվինոֆի տեսակցութեան մասին հրատարակուած կիսապաշտօն զեկոյց մը յուզում առաջ բերաւ քաղաքական շրջանակներու մէջ:

Ըսելէ յետոյ թէ երկու Նախարարները խօսեցան քաղաքական զանազան խնդիրներու, մասնաւորաբար զինաթափութեան մասին, զեկոյցը կ'աւելցնէ.—

«Լիտվինոֆ Շթրէզէմանի յայտնեց թէ Լեհաստանի տրուած է ծանուցագիր մը, որով խորհրդային կառավարութիւնը մտահոգութիւն կը յայտնէ Լեհաստանի եւ Լիթուանիոյ ձգտուած յարաբերութիւններուն եւ անկէ ծագելիք վտանգներուն մասին:

Երկու Նախարարներ համաձայնած են, որ ընդհանուրի շահին համար ստիպողական է զգուշանալ ամէն բանէ որ կրնայ խռովել խաղաղութիւնը եւ առնել անհրաժեշտ բոլոր միջոցները՝ ներկայ դժուարութիւնները հարթելու համար:»

Ծանուցագիրի այս ոճէն քաղաքական շրջանակները կ'եզրակացնեն թէ Պերլինի եւ Մոսկուայի կառավարութիւնները համերաշխութեամբ կարգ մը միջոցներ ձեռք առած են. հաւանաբար հաւաքական դիմում մը պիտի կատարեն Վարշաւա:

∴ Լիտվինոֆ եւ Լունաչարսքի Ժընեւ մեկնեցան արդէն:

## Երեք կեղծարարներ եւս ձերբակալուած

Հունգարական պարտաթուղթերու կեղծարարութեան խնդիրը օրէ օր կը ծաւալի: Առջի օր երեք նոր ձերբակալութիւններ կատարուեցան: Ապահովութեան Տնօրէնութեան կողմէ ոստիկանապետ Փէրիէ Փարիզի արուարձաններէն Սէն-Լէօ-լա-Ֆորէ երթալով ձերբակալեց դրամատան պաշտօնեայ Մարսէլ Փասքալը, որ հոն կը բնակէր իր բարեկամուհիին հետ: Փասքալ նախապէս իբրեւ վկայ լսուելով յայտարարած էր թէ կնքուելու համար դրամատուն ներկայացուցած է 7-800,000 ֆիորին արժէքով պարտաթուղթեր, որոնք կը պատկանէին Ռիցցի անուն մարդու մը:

Երբ ոստիկանապետը Փասքալի տունը մտաւ, անոր մօտ գտաւ Աւստրիացի մը՝ Պրունօ Պրուք, Վիեննայի մէջ օրագրող, որ վերոյիշեալ Ռիցցիի քարտուղարն էր եւ գործակատարը Քրէմէր անուն մէկու մը, որ Պլումէնշթայնի հայթայթած էր սրբուած պարտաթուղթեր:

Պրուք ըսաւ թէ Փասքալի տունը կը սպասէր Աւստրիացի դրամատէրի մը, որուն հետ ժամադրուած էր: Երկար սպասեցին դրամատէրին, որ չեկաւ: Պրուք ձերբակալուեցաւ եւ հրաման տրուեցաւ ձերբակալել նաեւ յիշեալ դրամատէրը, երբ ներկայանար:

Գրեթէ ամէն օր Մարսէլ Փասքալ մեծ ծրարներ կը ստանար Ժընեւէն: Հիմա կը հասկցուի թէ անոնք հունգարական պարտաթուղթեր կը պարունակէին:

Ուրբաթ կէսօրէն վերջ ալ ձերբակալուեցաւ մեծ դրամատան մը պաշտօնեաներէն Ժորժ-Լուի Տէպրիւյէր, որ մեծապէս օգնած էր կեղծ պարտաթուղթերու կնքուելուն: Իր այս ծառայութեան համար 20,000 ֆրանք «նուէր» ստացած էր:

Ձերբակալուած երեք անձերը նոյնպէս Սանթէի բանտը տարուեցան:

Ոստիկանապետ Քոլոնպանի, որ այս գործը երեւան հանելու մէջ գլխաւոր դերը կատարած էր, Վիէննա մեկնեցաւ տեղւոյն վրայ քննելու համար կարգ մը խնդիրներ: Պլումէնշթայն հաւանեցաւ որ Վիէննայի մէկ դրամատան մէջի իր դրամարկղը խուզարկուի:

## ՄԱՆՐ ԼՈՒՐԵՐ

ՀԱՑԸ ԵՒ ԿԱԹԸ ԿԸ ՍՂԵՆ.— Հինգշաբթի օրուընէ սկսեալ հացին քիլօն փոխանակ 1.95ի պիտի ծախուի 2 ֆրանքի: Նոյն օրը կաթին լիտրը 1.60էն պիտի բարձրանայ 1 ֆր. 70ի:

ՅԱՅՏՆԻ ՓԻԼԻՍՈՓԱՅ Տէքարթի աճիւնները Պանթէոն փոխադրելու առաջարկ ներկայացուեցաւ Փարիզի նահանգային ընդհանուր ժողովին:

ԼԸՀ ՄԵԾ ԳՐԱԳԷՏԵւ Թատերգակ Սթանիսլաս Փշիպիշեւսքի սրտի հիւանդութենէ մեռաւ Փօզնանիոյ մէջ, 60 տարեկան հասակին:

ՀՆԴԿԱՍՏԱՆԻ ընդհ. կառավարիչ Ալեքսանտր Վալէն Փարիզ հասաւ:

ԱՂԵՔՍԱՆԴՐԻՈՅ Թրամուէյի աշխատաւորները գործադուլ յայտարարեցին: Գահիրէէն ոստիկաններ ղրկուեցան՝ անկարգութեանց առաջքն առնելու համար:

Տէր եւ Տիկին Աբրահամ Շատանեան եւ զաւակները Արայ, Ջարեհ եւ Պերճ, ամենախորին ցաւով կը ծանուցանեն դառնաղէտ կորուստը իրենց հոգեհատոր զաւկին եւ եղբօր՝

**ՎԱՀԷ Ա. ՇԱՏԱՆԵԱՆԻ**

որ կնքեց իր մահկանացուն երիտասարդ հասակին մէջ անմխիթար սուգի մէջ թողլով իր սիրելիները:

Ազգականք եւ բարեկամք կը հրաւիրուին յուղարկաւորութեան տխուր արարողութեան որ պիտի կատարուի այսօր կիրակի ժամը 12,30ին Փարիզի հայ եկեղեցւոյն մէջ Rue Jean Goujon.

*Մահազդ չընդունողներէն կը խնդրուի ներկայս իբր այն նկատել:*

## ՅՈՒՇԱՏԵՏՐ

Հ. Յ. Դ. Առնուվիլ-լէ-Կոնէսի Թազմիկ խումբի դասախօսական ժողովը այսօր կիրակի առաւօտ ժամը 10.30ին սովորական հաւաքատեղին: Դասախօս ընկ. Անդրէ:

ԽՄԲԱԳՐԱՏՈՒՆ կը հրաւիրուին Տիկին Հ. Շահպազ, Պ. Մկրտիչ Պարսամեան եւ Պ. Յովսէփ Պարսամեան:




IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris(10)

Le Gérant : H. TEURNIER

